Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 3 ՓԵՏՐՎԱՐ 1954

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, պրոպագանդայի և ագիտացիայի բաժին։ Հեռախոս 2—52—78։


---

# ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԱՌԱՋՆԱՀԵՐԹ ԽՆԴԻՐՆԵՐԸ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՕՐԵՐԻՆ

Ռեսպուբլիկայի աշխատավորները մեծագույն խանդավառությամբ ընդունեցին ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագիրը Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Գերագույն Սովետի ընտրություններ անցկացնելու մասին։

Ընտրությունները, ինչպես ՍՍՌՄ բոլոր ժողովուրդների, այնպես էլ հայ ժողովրդի կյանքում խոշոր քաղաքական իրադարձություն են։ Ռեսպուբլիկայի աշխատավորները ամեն ջանք գործ են դնում, որպեսզի աշխատանքային նոր հաջողություններով նշանավորեն ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունները։ Արդյունաբերական ձեռնարկություններում և կոլտնտեսություններում անձնուրաց աշխատանք է կատարվում ժողովրդի նյութական բարեկեցությունը բարելավելու մասին Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության պատմա-

կան որոշումները մինչև վերջ կենսագործելու համար։

Այս օրերին ընտրությունները լավ նախապատրաստելու և հաջող անցկացնելու գործում լուրջ և կարևոր աշխատանք ունեն կատարելու ագիտատորները։ Նրանց առաջնահերթ խնդիրն է՝ ամեն օր ագիտացիոն-քաղաքական աշխատանք կատարել ընտրողների լայն շրջանում։ Ընտրողներին հանգամանորեն պարզաբանել Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ներքին ու արտաքին քաղաքականությունը։ Նրանց հետ նպատակասլաց և բովանդակալից ագիտացիոն զրույցներ անցկացնել ՍՄԿՊ 19-րդ համագումարի, ՍՍՌՄ Գերագույն Սովետի 5-րդ սեսիայի, ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի և պարտիայի ու կառավարության կողմից վերջերս ընդունված մյուս որոշումների վերաբերյալ։ Ընտրողներին պարզաբանել, թե ինչպես հարազատ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը իրենց գլխավոր խնդիրն են համարում աշխատավորների նյութական բարեկեցության հետագա բարելավման ապահովումը։ Նրանք անդադրում հոգ են տանում և մեծ չափերով ավելացնում են ժողովրդական սպառման



առարկաների արտադրությունը, որպեսզի սովետական մարդիկ լի ու լի բավարարվեն բոլոր տեսակի բարիքներով։

Կոլտնտեսային աշխատավորության մեջ կատարվող ագիտացիոն-բացատրական աշխատանքի ընթացքում ագիտատորները պետք է հատուկ ուշադրություն դարձնեն ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի որոշումները խոր և բազմակողմանիորեն պարզաբանելու կարևոր հարցի վրա, սիստեմատիկաբար մասսայականացնեն, թե ինչ է արվում իրենց կոլտնտեսությունում, մեքենա-տրակտորային կայանում, շրջանում և ռեսպուբլիկայում Սեպտեմբերյան պլենումի որոշումը կենսագործելու ուղղությամբ։

Ընտրությունների նախապատրաստման այս օրերին խիստ անհրաժեշտ է, որ ագիտատորները հմտորեն օգտագործեն ընտրական նախորդ կամպանիաների ընթացքում ձեռք բերված ագիտացիոն աշխատանքի հարուստ փորձը, քաղաքական ագիտացիայի առավել արդյունավետ ձևերն ու մեթոդները, ինչպիսիք են, օրինակ, կենդանի զրույցի և թերթերի ընթերցանության ամենօրյա կազմակերպումը, ցուցադրական ագիտացիայից խելացի ու մտածված կերպով

օգտվելը, ընտրողների համար կոլեկտիվ կինոդիտումներ կազմակերպելը և այլն։

Ագիտատորները պետք է հաշվի առնեն, որ ընտրողների մեջ կատարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքի կենտրոնը ընտրական տեղամասն է։ Ուստի առաջիկա ընտրությունների հաջողությունը մեծապես կախված է այն բանից, թե ընտրական տեղամասում ինչպես կծավալվի ագիտացիոն-մասսայական աշխատանքը, թե ագիտատորները ինչպես կկազմակերպեն դեպուտատության թեկնածուի օգտին մղվող ագիտացիան։

Ընտրությունները լիովին նախապատրաստված դիմավորելու համար խոշոր նշանակություն ունի ընտրական տեղամասերում ստեղծված ագիտպունկտերի ճիշտ և արդյունավետ օգտագործումը։ Այստեղ ընտրողների հետ սիստեմատիկաբար քաղաքական և գիտական թեմաների շուրջը պետք է ունենալ ագիտացիոն զրույցներ, զեկուցումներ, դասախոսություններ և կոնսուլտացիաներ։ Անհրաժեշտ է, որ ագիտպունկտերում ագիտատորները հաճախակի կազմակերպեն նաև թերթերի ընթերցանություն։ Ընդհանրապես ագիտպունկտը պետք է դառնա քաղաքական ագիտացիայի այնպիսի վայր, որտեղ ընտրողները կարողանան հեշտությամբ ստանալ իրենց հետաքրքրող բոլոր հարցերի պատասխանը։



Ընտրական տեղամասերում տարվող ամենօրյա ագիտացիոն-քաղաքական աշխատանքն է՛լ ավելի կամրապնդի պարտիական կազմակերպությունների սերտ կապը ընտրողների հետ։

Մեր ագիտատորների առաջնահերթ խնդիրն է նաև հատուկ ուշադրություն դարձնել առաջին անգամ ընտրություններին մասնակցող երիտասարդության վրա։ Խիստ կարևոր է, որ երիտասարդ ընտրողները հստակ պատկերացում ունենան ՍՍՌՄ Կոնստիտուցիայի, սովետական քաղաքացու մեծ իրավունքների մասին։ Նրանց համար պարբերաբար կարելի է կազմակերպել ագիտացիոն զրույցներ՝ ընտրությունների Կանոնադրության, սովետական ընտրական սիստեմի առավելությունների, սովետական հայրենասիրության, ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրական բարեկամության, սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնության և մյուս ակտուալ հարցերի վերաբերյալ։ Անհրաժեշտ է նաև, որ ագիտատորները երիտասարդ ընտրողների համար հաճախակի զրույցներ կազմակերպեն

*նաև ընտրական հանձնաժողովների, օկրուգների, տեղամասերի կազմակերպման, դեպուտատության թեկնածուների առաջադրման ու քվեարկման կարգի մասին։*

*Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում և կոլտնտեսություններում ի պատիվ ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների, նոր թափով է ծավալվում սոցիալիստական մրցությունը։ Արդյունաբերական ձեռնարկությունների բանվորներն ու ծառայողները ձգտում են արտադրական բարձր ցուցանիշներով դիմավորել ընտրությունները և այդ գործում ձեռք են բերել աչքի ընկնող հաջողություններ։ Կոլտնտեսային աշխատավորությունը ամեն ջանք գործ է դնում գարնան գյուղատնտեսական աշխատանքներին գերազանց նախապատրաստվելու և նոր գյուղատնտեսական տարում բարձր բերք նվաճելու համար։*

*Ագիտատորների խնդիրն է օգնել ձեռնարկություններում և կոլտնտեսություններում աշխատող ընտրողներին ստանձնելու ավելի կոնկրետ ու մոբիլիզացնող պարտավորություններ և պատվով կատարելու այդ պարտավորությունները։ Օգնել պարտիական կազմակերպություններին գլխավորելու աշխատավորների քաղաքական*



*և աշխատանքային ակտիվությունը, նրանց ստեղծագործական նախաձեռնությունը և հասնել գործնական արդյունքի՝ ապահովելով պարտիայի և կառավարության կողմից առաջադրվող խնդիրների անթերի կատարումը։*

*Ընտրությունների այս օրերին աշխատավորների մեջ, թե՛ ըստ աշխատանքի վայրի և թե՛ ըստ բնակավայրի, պետք է լայն ծավալել քաղաքական ագիտացիան և հասնել այն բանին, որ բոլոր ընտրողները ակտիվորեն ու միահամուռ կերպով իրենց ձայնը տան մեր մեծ Հայրենիքի լավագույն մարդկանց, Կոմունիստական պարտիայի արժանավոր սաների օգտին։*

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԶԻՆՎԱԾ ՈՒԺԵՐԻ 36-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

Գ. ԻՍԱՀԱԿՅԱՆ

*Փետրվարի 23-ին մեր մեծ երկրի բոլոր ժողովուրդները բուռն սիրով ու խանդավառությամբ տոնելու են Սովետական Բանակի և Ռազմա-Ծովային նավատորմի 36-րդ տարեդարձը։ Սովետական Բանակի տոնը ՍՍՌՄ ժողովուրդների հետ միասին մեծագույն երախտագիտության զգացմունքով նշում են իրենց նոր կյանքը կառուցող դեմոկրատական երկրների ժողովուրդները։ Այդ տոնը տոնում են նաև կապիտալիստական ու գաղութային երկրների աշխատավորները։*

*Սովետական Միության փառապանծ Զինված Ուժերի տարեդարձը մեր երկրի ժողովուրդները դիմավորում են արտադրական ու քաղաքական խանդավառության նոր վերելքի պայմաններում։ Համախմբված իրենց ուժերի նկատմամբ, սովետական կարգերի հզորության նկատմամբ խոր վստահու-*



*թյամբ, սովետական մարդիկ պայքարում են կոմունիզմի կառուցման համար, պարզ գիտակցելով այն մեծ խնդիրները, որոնք նշըված են պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվներում, ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիայի, ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի և պարտիայի ու կառավարության կողմից վերջերս ընդունված պատմական մյուս որոշումներում, որոնք ապահովում են սոցիալիստական պետության հզորության հետագա ամրապնդումը և մեր երկրի աշխատավորների նյութական բարեկեցության շեշտակի վերելքը։*

*Սովետական ժողովրդի խաղաղ, ստեղծագործական աշխատանքի պահպանման դիրքերում, Սովետական Միության պետական շահերի ապահովման դիրքերում հաստատ կանգնած են Սովետական Միության փառապանծ Զինված Ուժերը, որոնք ամբողջ աշխարհում խաղաղության ու անվտանգության գլխավոր նեցուկն են։*

*Ծնունդ առնելով Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի բովում, Սովետական Բանակը և Ռազմա-Ծովային նավատորմը կոփվել ու ամրացել են սոցիալիստական Հայրենիքի բոլոր թշնամիների դեմ մղած բազմաթիվ մարտերում և պատվով*

են կատարել իրենց սրբազան պարտքը սոցիալիստական Հայրենիքի նկատմամբ։

1918 թվականի փետրվարի 23-ին Կարմիր Բանակի զորամասերը Նարվայի և Պսկովի մոտ գլխովին ջախջախեցին իմպերիալիստական Գերմանիայի թալանչիական զորքերին և ապահովեցին Պետրոգրադի անվտանգությունը։ Այդ օրը դարձավ Սովետական փառապանծ Զինված Ուժերի ծննդյան օրը։

Սովետական Բանակի ամբողջ պատմությունը հերոսության, ժողովրդին անձնվիրաբար ծառայելու, իր զինվորական պարտքը արժանապատվությամբ կատարելու կենդանի օրինակ է։

Սովետական Բանակն իրենից ներկայացնում է բոլորովին նոր տիպի բանակ, որի նմանը չկա պատմության մեջ։ Սովետական Բանակի ուժի ու հերոսության աղբյուրներն այն են, որ նա հանդիսանում է իսկական ժողովրդական բանակ, ազատագրված բանվորների ու գյուղացիների բանակ, մեր երկրի ժողովուրդների եղբայրության բանակ։

Մեծ Լենինի կողմից ստեղծված Սովետական Բանակը քաղաքացիական կռիվների տարիներին խորտակիչ հարված հասցրեց իմպերիալիստական փիշատիչներին, դուրս



վռնդեց օտարերկրյա օկուպանտներին և պատվով ու փառքով պաշտպանեց աշխարհի առաջին սոցիալիստական պետությունը, մեր սիրասուն Հայրենիքի ազատությունն ու անկախությունը։

Ջախջախելով ամերիկա-անգլիական և բուրժուական մյուս երկրների իմպերիալիստների բոլոր փորձերն ու նրանց պլանները սովետական ժողովրդին ստրկացնելու վերաբերյալ, ոչնչացնելով ներքին կոնտրռևոլյուցիոն ուժերը, Սովետական Բանակը լայն հնարավորություն ստեղծեց մեր երկրի համար անցնելու խաղաղ սոցիալիստական շինարարության, վերականգնելու իմպերիալիստական պատերազմի և քաղաքացիական կռիվների հետևանքով քայքայված ժողովրդական տնտեսությունը։

Իրագործելով մեր երկրում սոցիալիզմի հաղթանակի լենինյան պլանը, Կոմունիստական պարտիան Վ. Ի. Լենինի գործի մեծ շարունակող Ի. Վ. Ստալինի գլխավորած Կենտրոնական Կոմիտեի ղեկավարությամբ ապահովեց սոցիալիզմի պատմական հաղթանակը։ Նախապատերազմյան հնգամյակի տարիներին ծնունդ առավ և հզոր ուժ դարձավ սոցիալիստական էկոնոմիկայի հիմքերի հիմքը՝ ծանր ինդուստրիան։ Դա հնա-

րավորություն տվեց ապահովել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի տեխնիկա-տնտեսական վերակառուցումը, մանր գյուղացիական տնտեսությունների սոցիալիստական վերակառուցումը։ Սոցիալիզմի հաղթանակի շնորհիվ ծնունդ առավ և ամրապնդվեց սովետական ժողովրդի բարոյա-քաղաքական միասնությունը, ստեղծվեց ու ամրապնդվեց մեր Հայրենիքի պաշտպանության նյութա-տեխնիկական բազան, Սովետական Բանակի համար ապահովվեց ամուր թիկունք, որի նմանը չի ունեցել պատմության մեջ և՛ ոչ մի բանակ։

Խաղաղ սոցիալիստական շինարարության տարիներին Սովետական Բանակը քանիցս հարկադրված է եղել համապատասխան դաս տալու մեր Հայրենիքի թշնամիներին— պատերազմի հրձիգներին Հեռավոր Արևելքում։ Սակայն Սովետական Զինված Ուժերի հզորությունն ու անպարտությունը, նրա բարձր մարտական կարողությունն ու բարոյական-քաղաքական հիանալի հատկությունները իրենց ամբողջ փայլով դրսևորվեցին հիտլերյան Գերմանիայի դեմ մղած Հայրենական Մեծ պատերազմում։

1941 թվականի հունիսի 22-ին ֆաշիստական Գերմանիան ուխտադրժորեն հարձակ-



վեց մեր Հայրենիքի վրա։ Այդպիսով սկսվեց սովետական ժողովրդի Հայրենական Մեծ պատերազմը հիտլերյան Գերմանիայի դեմ, որն ավարտվեց սովետական ժողովրդի, Սովետական Բանակի մեծագույն պատմական հաղթանակով։

Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմը հիտլերյան Գերմանիայի դեմ մեր ժողովրդի հոգևոր ու բարոյական ուժերի, սովետական հասարակական ու պետական կարգերի, Սովետական Զինված Ուժերի հզորության բազմակողմանի ստուգումն էր։ Այդ ստուգումը ցույց տվեց սոցիալիստական հասարակարգի, Սովետական պետության, մեր ժողովրդի և Սովետական Զինված Ուժերի անխորտակելի ուժն ու հզորությունը։ Ջախջախելով գերմանա-ֆաշիստական բանակը, սովետական զորքերը հողմացրիվ արեցին նաև ճապոնական իմպերիալիզմի ռազմական ուժերը Հեռավոր Արևելքում։

Ջախջախելով հիտլերյան բանակը, սովետական զորքերն իրենց ազատագրական ձեռքը մեկնեցին Լեհաստանին, Բուլղարիայի, Ռումինիայի, Ալբանիայի, Հունգարիայի, Չեխոսլովակիայի ժողովուրդներին, փրկեցին նրանց ֆաշիստական լծից և օգնեցին

նրանց կանգնելու իրենց պատմական զարգացման նոր ուղու վրա։ Սովետական Բանակի հաղթանակի հետևանքով ծնունդ առավ և օրը-օրին ամրանում է Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան, որը գլխավորում է ամբողջ Գերմանիայի խաղաղասեր ուժերի պայքարը գերմանական ժողովրդի դեմոկրատական զարգացման համար, հանուն ազատ, միասնական և դեմոկրատական Գերմանիայի։

Սովետական ժողովրդի, նրա փառապանծ Զինված Ուժերի մեծ հաղթանակը երկրորդ համաշխարհային պատերազմում պայմաններ ստեղծեց կորեական ժողովրդի ազատագրման և չին մեծ ժողովրդի պատմական հաղթանակի համար։ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի ստեղծումը, նրա նվաճումները ազատության և անկախության ուղի են հարթում Ասիայում կապիտալիզմի լծի տակ ճնշվող երկրների համար։

Սովետական ժողովրդի, նրա հերոսական Զինված Ուժերի պանծալի հաղթանակի շնորհիվ Հայրենական Մեծ պատերազմում ծնունդ առավ և օրավուր ամրանում է հզոր, դեմոկրատական լագերը, որը Սովետական Միության գլխավորությամբ պայքարում է



ամբողջ աշխարհում տևական խաղաղության և անվտանգության համար։

Սովետական Բանակի մեծ հաղթանակների հզոր աղբյուրը Կոմունիստական պարտիայի ղեկավարությունն է։ Խաղաղ սոցիալիստական շինարարության տարիներին պարտիան մշտապես հոգացել է Սովետական Բանակի ամրապնդման, նրա կադրերի դաստիարակման մասին։ Հայրենական պատերազմի տարիներին պարտիան գլխավորեց մեր ժողովրդի, Սովետական Բանակի հերոսական պայքարը նենգ թշնամու դեմ և ապահովեց նրա պատմական հաղթանակը։

Սովետական ժողովուրդն իր Զինված Ուժերի 36-րդ տարեդարձը դիմավորում է քաղաքական, տնտեսական ու կուլտուրական նոր վերելքի, Սովետական Միության աճող ու ամրացող միջազգային հեղինակության պայմաններում։

Մեր երկրի ժողովուրդների ստեղծագործական աշխատանքի անսպառ եռանդի շնորհիվ հաջողությամբ կատարվում են ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման հինգերորդ հնգամյա պլանը, ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման, ժողովրդի նյութական բարեկեցության բարելավման մասին պարտիայի ու

կառավարության որոշումները, որոնք նոր և խոշոր առաջընթաց քայլ են սոցիալիզմից դեպի կոմունիզմ ընթացող մեր երկրի զարգացման ճանապարհին: Հակառակ սոցիալիզմի թշնամիների ռանձգությունների, օրավուր աճում ու ամրանում է սոցիալիստական պետության հզորությունը:

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունն իրենց բոլոր ուժերը ի սպաս են դրել սոցիալիստական պետության հզորության է՛լ ավելի ամրացման, սովետական մարդկանց նյութական բարեկեցության հետագա վերելքի գործին: Ժողովրդի բարօրության մասին հոգատարությունը պարտիայի և կառավարության գլխավոր խնդիրն է:

Սովետական պետության աճող տնտեսական հզորության, ժողովրդի բարօրության մասին պարտիայի և կառավարության մշտական հոգատարության փայլուն ապացույց են հանդիսանում ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիայի, Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի և պարտիայի ու կառավարության մյուս որոշումները գյուղատնտեսության հետագա զարգացման, ժողովրդական սպառման ա-



ռարկաների արտադրության շեշտակի վերելքի ու սովետական առևտրի ծավալման մասին: Այդ որոշումները վկայում են, որ սոցիալիստական ինդուստրիայի զարգացման ասպարեզում սովետական ժողովրդի ձեռք բերած մեծագույն հաջողությունները պարտիային ու կառավարությանը թույլ են տալիս այժմ ընդհուպ ձեռնամուխ լինել մեր երկրում ժողովրդական սպառման առարկաների առատություն ստեղծելու խնդրի լուծմանը:

Սովետական Միության գյուղատնտեսության բոլոր աշխատողները մեծ խանդավառությամբ են իրագործում Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Սեպտեմբերյան պլենումի պատմական որոշումը: Արմատավորելով սովետական առաջավոր փորձության նվաճումները, նրանք ջանք չեն խնայում գյուղատնտեսության նոր վերելքն ապահովելու և մեր Հայրենիքի հզորությունն ամրացնելու համար, ինչպես նաև մեծ ոգևորությամբ են կենսագործում պարտիայի ու կառավարության այն լուրջ միջոցառումները, որոնց նպատակն է առաջիկա երկու—երեք տարում ստեղծել արդյունաբերական ապրանքների ու սննդամթերքների արտադրության շեշտակի վերելք:

Սոցիալիստական տնտեսության զարգացման, ժողովրդի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման հետ մեկտեղ աճում է նաև սոցիալիստական պետության հզորությունը։ Անդուլ կերպով ամրանում է սովետական կարգերի հիմքը՝ բանվոր դասակարգի և գյուղացիության անխորտակելի դաշինքը, նորանոր փայլուն հաղթանակներ է բերում ժողովուրդների իրավահավասարության ու բարեկամության՝ մեր երկրում հաստատված իդեոլոգիան, լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության անշեղ կենսագործումը։

Սովետական Բանակի 36-րդ տարեդարձը սովետական ժողովուրդը նշում է իր բարձրագույն պետական օրգանի՝ ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների նախօրյակին։ Մարտի 14-ին սովետական ընտրողները աշխարհիս ամենադեմոկրատական Կոնստիտուցիայի հիման վրա ընտրելու են Գերագույն Սովետի դեպուտատներ։ Այդ մեծ քաղաքական կամպանիային սովետական ժողովուրդը, ինչպես և նրա Զինված Ուժերը նախապատրաստվում են մեծ խանդավառությամբ։ Օրըստօրե լայն ծավալ է ստանում Գերագույն Սովետի ընտրություններին նվիրված սոցիալիստական մրցու-



թյունը։ Առաջիկա ընտրությունները մեկ անգամ ևս ամբողջ աշխարհին ցույց կտան սովետական պետության հզորությունը, մեր ժողովրդի միասնությունը և նրա անսահման սերն ու նվիրվածությունը Կոմունիստական պարտիային և Սովետական կառավարությանը։

Սովետական Միության հետ միասին աճում և ամրապնդվում է ամբողջ դեմոկրատական, խաղաղասեր լագերը։ Ժողովրդական դեմոկրատիայի երկրները վստահորեն առաջ են ընթանում սոցիալիզմի ուղիով։ Գնալով է՛լ ավելի են ամրապնդվում Սովետական Միության սերտ համագործակցությունը և իսկական եղբայրական բարեկամությունը դեմոկրատական լագերի երկրների հետ։ Մեծ ու անխորտակելի բարեկամությամբ է կապված Սովետական Միությունը Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի հետ։

Կոմունիզմի կառուցման ասպարեզում սովետական ժողովրդի ձեռք բերած հաջողությունները միաժամանակ մեծագույն միջազգային նշանակություն ունեն։ Մեր երկիրը լուսավորում է ամբողջ աշխարհի մարդկության՝ դեպի կոմունիզմ տանող ուղին, օրավուր մեծանում է Սովետական Միու-

թյան դերը միջազգային կյանքում, բարձրանում է նրա հեղինակությունը ամբողջ աշխարհի աշխատավորության աչքում։ Կոմունիզմի կառուցման, աշխատավորների կենսամակարդակի բարձրացման ասպարեզում մեր երկրի ամեն մի նոր հաջողությունը հըսկայական ազդեցություն է գործում կապիտալիստական ու գաղութային երկրների ժողովուրդների մտքերի ու սրտերի վրա։

Խաղաղ ստեղծագործական աշխատանքի այն մեծ թափը, որ ծավալվել է մեր երկրում, Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության այն հսկայական միջոցառումները, որոնք ապահովում են սոցիալիստական էկոնոմիկայի հետագա բուռն զարգացումը և սովետական մարդկանց կենսամակարդակի աճը՝ ամենայն պարզորոշությամբ վկայում են մեր պարտիայի և Սովետական կառավարության արտաքին քաղաքականության խաղաղասիրական բնույթի մասին։

Գլխավորելով ամբողջ աշխարհի խաղաղասեր ուժերի պայքարը տևական խաղաղության և անվտանգության համար՝ Սովետական պետությունը գործնական քայլեր է կատարում բոլոր երկրների հետ, անկախ նրանց սոցիալական սիստեմների տար-



բերությունից, բարի դրացիական հարաբերություններ հաստատելու ու ամրացնելու, առևտրական ու կուլտուրական կապերը նրանց հետ ընդարձակելու, միջազգային լարվածությունը թուլացնելու ուղղությամբ։ Ըստ որում Սովետական Միությունը ելնում է նրանից, որ ներկայումս չկա այնպիսի վիճելի կամ չլուծված հարց, որը կարելի չլիներ լուծել խաղաղ ճանապարհով, շահագրգռված կողմերի փոխադարձ պայմանավորվածության հիման վրա։

Սակայն այդ ուղղությամբ Սովետական Միության կատարած ձեռնարկումները թըշնամական դիմադրության են հանդիպում ԱՄՆ-ի, Անգլիայի և մյուս իմպերիալիստական պետությունների տիրապետող ռեակցիոն շրջանների կողմից, որոնք շահագրգռված չեն խաղաղության գործի ամրացման մեջ, միջազգային լարվածության թուլացման մեջ, այլ, ընդհակառակն, ամեն կերպ բորբոքում են պատերազմի հիստերիան և իրագործում են սառը պատերազմի քաղաքականությունը։

Ամերիկյան մոնոպոլիստների համաշխարհային տիրապետություն հաստատելու նպատակով պատերազմի ռազմատենչ շըրջաններն իրագործում են սպառազինման

կատաղի մրցավազքի, նորանոր ագրեսիվ բլոկներ կազմակերպելու, ուրիշ երկրների տերիտորիաներում ռազմական բազաների լայն ցանց ստեղծելու քաղաքականությունը։ Դրանով նրանք ձգտում են նոր պատերազմի սպառնալիքի տակ սոփյել դեմոկրատիայի լագերի մեջ մտնող 800 միլիոն մարդկանց հրաժարվելու իրենց արյունով ու քրտինքով ձեռք բերված պատմական նվաճումներից, ձգտում են հետ շրջել պատմության ընթացքը։ Սակայն չկա աշխարհում ոչ մի ուժ, որ կարողանա փոխել պատմության ընթացքը, որ կարողանա շեղել սովետական ժողովրդին, դեմոկրատիայի լագերի մեջ մտնող բոլոր ժողովուրդներին սոցիալիզմի ուղուց։

Իմպերիալիստական պետությունների ավանտյուրիստական պլանները մեկը մյուսի ետևից ձախողվում են։ Այդ մասին է վկայում Կորեայում կնքված զինադադարը, այդ մասին է վկայում ամերիկյան իմպերիալիստների կողմից իրագործվող ատոմային շանտաժի քաղաքականության տապալումը։

Միջազգային լարվածության հետագա թուլացման, խաղաղության ու անվտանգության ամրացման գործում վճռական նշանակություն ունի մեծ տերությունների համագործակցությունը։ Սովետական պետության հետևողական խաղաղասիրական քաղաքականության, բոլոր երկրների խաղաղության կողմնակիցների համառ ջանքերի շնորհիվ երկարատև ընդմիջումից հետո սույն թվի հունվարի 25-ին Բեռլինում բացվեց չորս մեծ պետությունների՝ ՍՍՌՄ-ի, ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի Արտաքին Գործերի Մինիստրների խորհրդակցությունը։ ՍՍՌՄ Արտաքին Գործերի Մինիստր ընկեր Վ. Մ. Մոլոտովը խորհրդակցության առաջին նիստում արած հայտարարության մեջ մանրամասնորեն հիմնավորեց այն կարևորագույն միջազգային հարցերը, որոնց կարգավորումից է առաջին հերթին կախված միջազգային լարվածության հետագա թուլացումը, խաղաղության ու անվտանգության ամրացումը ամբողջ աշխարհում։ Միլիոնավոր մարդիկ իրենց ուշադրությունն են բևեռել այդ խորհրդակցությանը և սպասում են նրանից գործնական քայլեր։

Մեր հզոր ու հարազատ Կոմունիստական պարտիան անդուլ կերպով հոգում է Սովետական պետության է՛լ ավելի ամրապնդման և արտաքին թշնամիների ոտնձգու-

թյուններից մեր Հայրենիքի անվտանգու-
թյունն ապահովելու մասին։

Հաստատակամորեն պայքարելով խաղա-
ղության գործի համար, սովետական մար-
դիկ միևնույն ժամանակ անդուլ կերպով
ամրապնդում են Սովետական Միության
պաշտպանունակությունը։

Մեր երկրի աշխատավորներն իրագործե-
լով կոմունիզմի կառուցման հոյակապ
պլանները, միաժամանակ ստեղծում են Սո-
վետական Զինված Ուժերի համար առաջ-
նակարգ մարտական տեխնիկա և այն ա-
մենը, ինչ անհրաժեշտ է նրա մատակա-
րարման համար։ Մեր ժողովուրդը մեծա-
գույն հաճույքով Սովետական Բանակի
շարքերն է ուղարկում իր զավակներին, այն
ապահովելով անհրաժեշտ ու բարձրորակ
համալրումով։ Բազմաթիվ թելերով կապ-
ված լինելով իր Ռազմական Ուժերի հետ,
սովետական ժողովուրդը աշխատանքային
ոգևորությամբ և կոմունիզմի կառուցման
գործում ձեռք բերած նվաճումներով դրա-
կան մեծ ազդեցություն է գործում բանակի
քաղաքական-բարոյական վիճակի վրա։

Սովետական հզոր Զինված Ուժերը միշտ
եղել են, կան և կմնան որպես Սովետական
տերության պետական շահերի հուսալի



պաշտպան, կոմունիզմ կառուցող սովե-
տական ժողովրդի մեծագույն պատմական
նվաճումների և խաղաղ ստեղծագործական
աշխատանքի հենարան։ Սովետական Զին-
ված Ուժերը մշտապես պատրաստ են հա-
կահարված տալու պատերազմի պրովոկա-
տորներին ու հրձիգներին և ստիպելու
նրանց՝ հարգել Սովետական Միության սո-
ցիալիստական նվաճումներն ու հզորու-
թյունը։

# ԶՐՈՒՅՑ ԿԱՐՏՈՖԻԼԻ ԵՎ ԲԱՆՋԱՐԵՂԵՆԻ ՊԱՐՏԱԴԻՐ ՄԹԵՐՈՒՄՆԵՐԻ ՈՒ ՊԵՏԳՆՄԱՆ ԳՆԵՐԻ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՄԱՍԻՆ

## Պ. ԱՄԻՐՅԱՆ

*«ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Սեպտեմբերյան պլենումի պատմական որոշման մեջ նշված է սոցիալիստական գյուղատնտեսության բազմակողմանի զարգացման ծրագիրը, ցույց են տրված մեր երկրում ժողովրդի համար պարենամթերքի և լայն սպառման ապրանքների արդյունաբերության համար հումքի առատության ստեղծելու ուղիները։*

*ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի՝ «1953—1955 թ. թ. կոլտնտեսություններում և սովխոզներում կարտոֆիլի և բանջարեղենի արտադրության ավելացնելու միջոցառումների և մթերումների մասին» որոշումը նոր և պատասխանատու խնդիրներ դրեց գյուղատնտեսության աշխատողների առջև, որոնց*



*անթերի կատարումը կապահովի գյուղատնտեսության նոր և հզոր վերելքը։ Մոտակա 2—3 տարում կարտոֆիլի և բանջարեղենի արտադրությունը հասցվելու է այնպիսի չափերի, որ դրանք լրիվին բավարարեն ո՛չ միայն քաղաքների և արդյունաբերական կենտրոնների բնակչության ու վերամշակող արդյունաբերության, այլև անասնաբուծության զարգացման պահանջները։*

*Պարտիայի ու կառավարության կողմից ձեռնարկված միջոցառումների մեջ կարևոր տեղ է գրավում կարտոֆիլի և բանջարեղենի պարտադիր մթերումների և պետգնումների գների բարձրացումը։*

*Այդ նոր որոշման համաձայն, մեր կոլտնտեսությունները դեռ անցյալ տարվանից սկսեցին պետությանը կարտոֆիլ և բանջարեղեն հանձնել նոր, ավելի բարձր գներով։ Հայկական ՍՍՌ կոլտնտեսությունների համար, ըստ այդ որոշման, սահմանվել են հետևյալ գները՝ պետությանը պարտադիր կարգով հանձնվող ուշահաս կարտոֆիլի մեկ տոննայի դիմաց կոլտնտեսությունն ստանալու է 125 ռուբլի, իսկ վաղահաս կարտոֆիլինը՝ մինչև հուլիսի 31-ը հանձնելու դեպքում 250 ռուբլի, օգոստոսի*

1-ից մինչև 15-ը հանձնելու դեպքում՝ 200 ռուբլի և օգոստոսի 16-ից մինչև 31-ը հանձնելու դեպքում՝ 150 ռուբլի։ Կարտոֆիլ հանձնող կոլտնտեսություններն առաջվա նման կստանան դրամական հավելումներ՝ կարտոֆիլի սորտայնության, խոշորության, օսլայի շատ պարունակության, ինչպես նաև պետությանը ժամկետից շուտ հանձնելու համար։

Զգալի չափով ավելացվելու են բանջարանոցային կուլտուրաների պետական մթերման և պետգնման գները։ Այսպես, ուշահաս վարունգի պետական մթերման գինը մեկ տոննայի համար սահմանված է 300 ռուբլի, ուշահաս պոմիդորինը՝ 350 ռուբլի, վաղահաս պոմիդորինը՝ մինչև օգոստոսի 1-ը հանձնելու դեպքում 800 ռուբլի, իսկ օգոստոսի 1-ից մինչև 15-ը հանձնելու դեպքում՝ 600 ռուբլի, ուշահաս կաղամբինը՝ 100 ռուբլի, իսկ վաղահաս կաղամբինը, նայած հանձնման ժամկետներին՝ 120—500 ռուբլի, գլուխ սոխինը՝ 475 ռուբլի, ուշահաս գազարինը՝ 200 ռուբլի, վաղահաս գազարինը՝ 350 ռուբլի, սեղանի վաղահաս ճակնդեղինը՝ 135 ռուբլի, իսկ ուշահասինը՝ 100 ռուբլի։ Պետությունը այսուհետև ևս կշարունակի կոլտնտեսություններից և կոլ-



տնտեսականներից գնել ավելի շատ կարտոֆիլ և բանջարեղեն։

Կարտոֆիլի և բանջարեղենի նոր, բարձրացված գների շնորհիվ այժմ արդեն ռեսպուբլիկայի շատ կոլտնտեսություններ ստացել են զգալի դրամական եկամուտ։ Հոկտեմբերյանի շրջանի Արմավիր գյուղի կոլտնտեսությունը անցյալ տարի ոչ լրիվ տվյալներով բանջարաբուծությունից ստացել է ավելի քան 1 միլիոն 126 հազար ռուբլու դրամական եկամուտ, այսինքն՝ 303 հազար ռուբլով ավելի, քան 1952 թվականին։ Նույն շրջանի Նալբանդյան գյուղի կոլտնտեսությունը գների բարձրացման հետևանքով անցյալ տարի բանջարաբուծությունից ստացավ 920 հազար ռուբլու եկամուտ, որը երկու անգամ ավելի է, քան ստացել էր 1952 թվականին։

Աճեցնելով կարտոֆիլի առատ բերք, ռեսպուբլիկայի շատ կոլտնտեսություններ անցյալ տարի պետությանը ավելի շատ կարտոֆիլ հանձնեցին և պետական մթերման ու պետգնման գների զգալի բարձրացման շնորհիվ դրամական մեծ եկամուտ ստացան։

Կրասնոսելսկի շրջանի Օրջոնիկիձե գյուղի կոլտնտեսությունը անցյալ տարի զգալի չափով գերակատարեց պետությանը մթեր-

ման ու պետգնման կարգով կարտոֆիլ հանձնելու պլանը և ստացավ 117 հազար ռուբլու դրամական եկամուտ, որը չորս անգամ ավելի է 1952 թվականին կարտոֆիլից ստացված եկամուտից։ Կրկնակի շատ դրամական եկամուտ է ստացել նաև նույն շրջանի Թթուջրի կոլտնտեսությունը։

Կիրառելով ագրոտեխնիկական անհրաժեշտ միջոցառումները, կարտոֆիլի բարձր բերք են աճեցրել նաև ուրիշ շատ կոլտնտեսություններ։ Նոր Բայազետի շրջանի Այրիվանք գյուղի կոլտնտեսությունը, որը 1952 թվին մթերման և պետգնման կարգով հանձնած կարտոֆիլի դիմաց ստացել էր միայն 2.932 ռուբլի դրամ, անցյալ տարի գների բարձրացման հետևանքով, կարտոֆիլից ստացավ 12 հազար ռուբլու եկամուտ։ Սևանի շրջանի Վարսեր գյուղի կոլտնտեսությունը մթերման և պետգնման գների բարձրացման շնորհիվ 56 հազար ռուբլով ավելի եկամուտ է ստացել, քան 1952 թվականին։ Մոտ 40 հազար ռուբլի ավելի եկամուտ է ստացել նաև նույն շրջանի Լճաշեն գյուղի կոլտնտեսությունը։

Պարտիայի և կառավարության նոր միջոցառումը զգալի չափով կավելացնի կոլտնտեսությունների և կոլտնտեսականների



դրամական եկամուտները՝ կարտոֆիլի և բանջարեղենի իրացումից։

Կարտոֆիլի և բանջարեղենի մթերման ու պետգնման գների զգալի բարձրացումը կոլտնտեսային գյուղացիության բարեկեցության անընդհատ բարելավման նկատմամբ պարտիայի և կառավարության կողմից ցուցաբերվող մշտական հոգատարության վառ ապացույցն է։

Ոգևորված այդ նոր հոգատարությամբ, ռեսպուբլիկայի կոլտնտեսային գյուղացիությունը աշխատանքային մեծ ախրագործությամբ ձեռնամուխ է եղել 1954 թվականի գյուղատնտեսական աշխատանքների նախապատրաստմանը։ Բանջարաբուծական շատ կոլտնտեսություններ այժմվանից կարգավորում են ջերմոցային տնտեսությունը։ Կարտոֆիլացան կոլտնտեսությունները կուտակել են կարտոֆիլի անհրաժեշտ քանակությամբ լավորակ սերմեր։ Քառակուսի-բնային ցանքսի կազմակերպման համար պատրաստել են որակյալ կադրեր։

Ծավալելով լայն, գործարար սոցիալիստական մրցություն, կոլտնտեսային գյուղացիությունը ոչ մի ջանք չի խնայի պատվով կատարելու պարտիայի պահանջը՝ գյուղատնտեսության բոլոր ճյուղերի աննախընթաց վերելքն ապահովելու համար։

# ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ ԱՐՄԱՏԱՎՈՐԵԼ ԱՆԱՍՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԱՎՈՐ ՓՈՐՁԸ

Ս. ԵՐԻՑՅԱՆ
Գյուղատնտեսական գիտությունների թեկնածու

*Անասնաբուծության հետագա բուռն վերելքը մեր երկրի համար անհետաձգելի և կենսական խնդիր է։*

*ՍՄԿԿ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումը նշեց, որ հանրային անասնաբուծության ամենաարագ վերելքը կենսական կարևոր նշանակություն ունի երկրի համար և այժմ հանդիսանում է պարտիայի ու պետության ամենաանհետաձգելի խնդիրը գյուղատնտեսության բնագավառում։*

*Անասնաբուծության հետագա զարգացման գործում վճռական նշանակություն ունի առաջավոր փորձի տարածումն ու արմատավորումը կոլտնտեսություններում։ Այդ կապակցությամբ պարտիայի 19-րդ համագումարում ընկեր Գ. Մ. Մալենկովն ասաց.*



*«... Բոլոր ուժերով պաշտպանել աշխատանքի դրական օրինակները և առաջավորների ու նորարարների պրոգրեսիվ նախաձեռնությունները, աշխատավորների ամբողջ մասսայի մեջ ամեն կերպ տարածել առաջավոր փորձը՝ դրանով իսկ մնացողներին օգնելով բարձրանալու առաջավորների մակարդակին»։*

*Շահումյանի շրջանի Շենգավիթ գյուղի Կալինինի անվան կոլտնտեսության անասնապահներն իրենց մոտ արմատավորելով Կոստրոմայի մարզի «Կարավաևո» սովխոզի անասնապահների առաջավոր փորձը, հասան խոշոր հաջողությունների։ Այս կոլտնտեսությունում մինչև առաջավոր փորձի արմատավորումը (1949 թ.) անասնաբուծությունը հետամնաց ճյուղ էր։ Անասունների ցածր մթերատվության պատճառով շատ քիչ էր անասնաբուծությունից ստացվող եկամուտը։ Կոլտնտեսությունը նույնիսկ անասնաբուծական մթերքների հանձնման պլանը դժվարությամբ էր կատարում։ 1949 թվականին կաթնապրանքային ֆերման ստացել էր մոտ 10 տոննա կաթ, իսկ 1953 թվականին այն հասավ 167 տոննայի։ Կովերի միջին կաթնատվությունը 1949 թվականին կազմում էր ընդամենը*

488 լիտր, իսկ այժմ այն հասնում է 3.400 լիտրի։ Երբ կոլտնտեսությունում արմատավորվեց առաջավոր փորձը, կոլտնտեսությունը անասնաբուծության զարգացման ցուցանիշներով առաջին տեղը գրավեց ռեսպուբլիկայում։ Երեք տարվա ընթացքում կոլտնտեսությունում ստացված կաթի ընդհանուր քանակն ավելացավ 16,7 անգամ։

Կոլտնտեսությունը այդ հաջողությունները ձեռք բերեց առաջավոր փորձի արմատավորման շնորհիվ։

Ամենից առաջ հիմնովին բարելավվեց անասունների կերակրումը։ Կոշտ և քիչ սննդարար կերերի փոխարեն անասունները ավելի շատ կերակրվեցին հյութալի և խտացրած կերերով։ Յուրաքանչյուր կովին օրական տրվեց 20—25 կգ. սիլոս և ճակընդեղ, 2—3 կգ. խտացրած կեր (քուսպ, թեփ), 4—5 կգ. առվույտի խոտ և 4—5 կգ. բամբակի հունդի կեղև (շելուխա)։ Առանձին ուշադրություն դարձվեց անասուններին խմելու ջրով ապահովելու վրա։ Եթե առաջ ձմռան շրջանում կովերը չէին կարողանում կուշտ ջուր խմել ցրտի, աղբյուրի անհարմար լինելու պատճառով, ապա այժմ նրանք ջուր խմում են ցանկացած ժամանակ և ուզածի չափ, որովհետև բոլոր գո-



մերում տեղավորված են ավտոմատ խմոցներ։ Այնուհետև վերացվեց այն վատ պրակտիկան, երբ կովերը կթվում էին հորթերով։ Դրա հետևանքով վատ էին աճում մատղաշները, իսկ այդ հանգամանքը բացասաբար էր անդրադառնում գլխաքանակի որակի լավացման վրա։

Կովերի կերակրումն ու խնամքը բարելավվեց հատկապես 1950 թվականին, երբ անասունների համար կառուցվեց բոլոր անհրաժեշտ հարմարանքներով կովանոց։ Այստեղ հատակը քարի փոխարեն ասֆալտապատվեց, մսուրները դրվեցին կովանոցի հատակին և ամեն կովի առաջ ստեղծվեց ջրի ավտոմատ խմոց։ Այդ ժամանակից խիստ կերպով փոխվեց կովանոցում կատարվող աշխատանքի կարգը։ Օրական երկու անգամ կերակրելու և կթելու փոխարեն, կոլտնտեսականները կովերին սկսեցին կթել և կերակրել 3—4 անգամ։ Այնուհետև մտցվեց կովերի կաթի ամենօրյա անհատական հաշվառում, որը հնարավորություն տվեց հայտնաբերել լավ ու վատ կովերը։ Այն կովերը, որոնք լավ կերակրման հետևանքով միայն չաղացան, բայց կաթը չավելացրին, խոտանվեցին և փոխարինվեցին լավորակ ցեղի երինջներով, իսկ մի մասն էլ գնովի կովերով։

1950 թվականից մինչև հիմա կոլտնտեսության կովերի գլխաքանակը տարեցտարի աճում է։ Այժմ յուրաքանչյուր 100 հեկտար հողային տարածությանն ընկնում է մոտ 20 կով։

1952 թվականից սկսած, ամիսը մեկ անգամ ստուգվում է ամեն կովի կաթի յուղայնությունը։ Դա հնարավորություն է տալիս պարզելու, թե որ կովն ունի յուղալի և որը՝ ջրալի կաթ։

Շենգավիթ գյուղի կոլտնտեսությունը դադարեցրել է կովերին սար տանելը։ Կովերը ամռանը մնում են գյուղում և սնվում կանաչ առվույտով, աշնան կողմը՝ սուդանի խոտով, եգիպտացորենով, շամիզայով, խտացրած կերերով (քուսպ և ցորենի թեփ)։ Ամռանը կանաչ կերի հետ միասին կովերին տրվում է խտացրած կեր՝ օրական 2—3 կիլոգրամ։

Առանձին բարձրակիթ կովեր, որոնց կաթնատվությունը հասնում է 25—30 և ավելի կիլոգրամի, բոլոր տեսակի կերերից համեմատական չափով ավելի են ստանում։ Այս կոլտնտեսությունում 1952 թվականի ամռանը ռացիոնալ կերակրման միջոցով ամենից շատ կաթ տվեց «Լույս» կովը (մոտ 42 կգ.)։ Կոլտնտեսությունում արմատավոր-



վեց նաև անասնակթի ժամանակակից առաջավոր մեթոդը՝ էլեկտրակիթը։ 1952 թվականին շրջանի մեքենա-տրակտորային կայանը կովանոցում տեղադրեց էլեկտրական կթի մեքենա։ Բացի այդ, կովանոցում արդեն անց է կացվում կախովի ուղի, որն օգտագործվելու է կերերը ներս բերելու և գոմաղբը դուրս տանելու համար։

Կերերի քանակը կոլտնտեսությունում շատ քիչ էր։ Առվույտի 1 հեկտար տարածության տարեկան բերքատվությունը 40—44 ցենտներից չէր անցնում, սակայն բավական էր կիրառել հետևյալ միջոցառումները և առվույտի բերքը գրեթե եռապատկվեց։ Նախ վաղ գարնանը թրթուրի դեմ դաշտում քիմիական պայքար կազմակերպվեց։ Այնուհետև կրճատվեց խոտհնձերի միջև ընկած ժամանակաշրջանը։ Եթե նախկինում առվույտի մեկ խոտհնձից մինչև մյուսը ընկած ժամանակաշրջանը տևում էր առնվազն 30—40 օր, իսկ այժմ ցանքերի մշակության բարելավման, ցանքերի սիստեմատիկ ոռոգման շնորհիվ, այն տևում է 20—25 օր։ Ամեն հնձից հետո, առվույտի դաշտերը փոցխվում են և տրվում է լրացուցիչ սնուցում։ Այդ բոլորի շնորհիվ, այժմ մեկ հեկտար առվույտից ստանում են 100—114 ցենտներ բերք։

Ցորենի բերքահավաքից հետո կոլտնտեսությունն ահա երեք տարի է, ինչ ցանում է սուդանի խոտ, եգիպտացորեն։ Դրանց մի մասը տրվում է կովերին, կանաչ վիճակում և մի մասն էլ սիլոսացվում է։

Շահումյանի շրջանի Շենգավիթ գյուղի Կալինինի անվան կոլտնտեսության առաջավոր փորձը վկայում է, որ մեր կոլտնտեսությունների անասնապահության զարգացման բնագավառում ունեն շատ մեծ, դեռ չօգտագործված հնարավորություններ և եթե նրանք ինչպես հարկն է ձեռնամուխ լինեն այդ խոշոր նշանակություն ունեցող գործին, ապա կարճ ժամանակում կհասնեն Կալինինի անվան կոլտնտեսությանը, դրանով իսկ կապահովեն պարտիայի Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի որոշման կենսագործումը։

Կոլտնտեսությունը խոշոր հաջողություններ ունի նաև ոչխարաբուծության, խոզաբուծության, թռչնաբուծության և մանավանդ բանջարաբուծության բնագավառում։

---



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

1. ՍՍՌՄ Կոնստիտուցիան ամենադեմոկրատականն է աշխարհում։
2. ՍՍՌՄ Կոնստիտուցիայի հիմնական առանձնահատկությունները։
3. ՍՍՌՄ Կոնստիտուցիան բարոյական օգնություն և իրական օժանդակություն է ազատասեր ժողովուրդների համար։
4. ՍՍՌՄ Կոնստիտուցիան խաղաղության, ժողովուրդների բարեկամության, ազատության և երջանկության Կոնստիտուցիա է։
5. ՍՍՌՄ Ընտրական օրենքը ամենադեմոկրատականն է աշխարհում։
6. ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունները ՍՍՌՄ ժողովուրդների կյանքում քաղաքական կարևորագույն իրադարձություն են։
7. ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունները նշանավորենք աշխատանքային նոր հաջողություններով։

Յորենի բերքահավաքից հետո կոլտնտեսությունն ահա երեք տարի է, ինչ ցանում է սուդանի խոտ, եգիպտացորեն։ Դրանց մի մասը տրվում է կովերին, կանաչ վիճակում և մի մասն էլ սիլոսացվում է։

Շահումյանի շրջանի Շենգավիթ գյուղի Կալինինի անվան կոլտնտեսության առաջավոր փորձը վկայում է, որ մեր կոլտնտեսությունների անասնապահության զարգացման բնագավառում ունեն շատ մեծ, դեռ չօգտագործված հնարավորություններ և եթե նրանք ինչպես հարկն է ձեռնամուխ լինեն այդ խոշոր նշանակություն ունեցող գործին, ապա կարճ ժամանակում կհասնեն Կալինինի անվան կոլտնտեսությանը, դրանով իսկ կապահովեն պարտիայի Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի որոշման կենսագործումը։

Կոլտնտեսությունը խոշոր հաջողություններ ունի նաև ոչխարաբուծության, խոզաբուծության, թռչնաբուծության և մանավանդ բանջարաբուծության բնագավառում։

═══



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

1. ՍՍՌՄ Կոնստիտուցիան ամենադեմոկրատականն է աշխարհում։

2. ՍՍՌՄ Կոնստիտուցիայի հիմնական առանձնահատկությունները։

3. ՍՍՌՄ Կոնստիտուցիան բարոյական օգնություն և իրական օժանդակություն է ազատասեր ժողովուրդների համար։

4. ՍՍՌՄ Կոնստիտուցիան խաղաղության, ժողովուրդների բարեկամության, ազատության և երջանկության Կոնստիտուցիա է։

5. ՍՍՌՄ Ընտրական օրենքը ամենադեմոկրատականն է աշխարհում։

6. ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունները ՍՍՌՄ ժողովուրդների կյանքում քաղաքական կարևորագույն իրադարձություն են։

7. ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունները նշանավորենք աշխատանքային նոր հաջողություններով։

*8. Լայնորեն ծավալենք սոցիալիստական մրցություն ի պատիվ ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

1-ին, 2-րդ, 3-րդ և 4-րդ թեմաների վերաբերյալ

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Կոնստիտուցիա *(Հիմնական Օրենք), Հայպետհրատ, 1947 թ.։*

*Ի. Վ. ՍՏԱԼԻՆ*— ՍՍՌ Միության Կոնստիտուցիայի նախագծի մասին, *Հայպետհրատ, առանձին հրատարակություն, 1945 թ., «Լենինիզմի հարցերը», էջ 618—651, Հայպետհրատ, 1940 թ.։*

*Գ. ՄԱԼԵՆԿՈՎ*— Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին, *Հայպետհրատ, 1952 թ., էջ 91—97։*

*Կ. Ե. ՎՈՐՈՇԻԼՈՎ*— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 36-րդ տարեդարձը, *առանձին բրոշյուր, 1953 թ. Հայպետհրատ։*

*Դ. ԴԵԼՈՎ*— Հաղթանակած սոցիալիզմի Կոնստիտուցիան, *«Ս. Հ.», 5 դեկտեմբերի 1953 թ.։*

ՍՍՌՄ Կոնստիտուցիայի օրը. *«Ս. Հ.»; 5 դեկտեմբերի 1953 թ.։*

Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի պատմություն: *Համառոտ դասընթաց, Հայպետհրատ, 1946 թ., էջ 467—482։*



*Ա. Մ. ՊԱՆԿՐԱՏՈՎԱ.*— ՍՍՌՄ ժողովուրդների անխախտ բարեկամությունը մեծ շարժիչ ուժ է կոմունիզմի համար մղվող պայքարում:

Վ. Ֆ. ՆԻԿՈԼԱԵՎ— Կոմունիստական պարտիայի ղաղափականությունը սովետական հասարակարգի կենսական հիմքն է, *առանձին բրոշյուր, 1953 թ., Հայպետհրատ։*

*Մ. Վ. ԲԵԼՈՎ*— Կոմունիստական պարտիան սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժն է, *առանձին բրոշյուր, 1953 թ., Հայպետհրատ։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

5-րդ, 6-րդ, 7-րդ, 8-րդ թեմաների վերաբերյալ

Կանոնադրություն ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների *(հաստատված է ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1950 թ. հունվարի 9-ի Հրամանագրով), առանձին հրատարակություն, Հայպետհրատ, 1954 թ.։*

*Ի. Վ. ՍՏԱԼԻՆ*— Ճառ Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում, *1937 թ. դեկտեմբերի 11-ին Մեծ թատրոնում, առանձին բրոշյուր, Հայպետհրատ,* Ճառ Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում, *1946 թ. փետրվարի 9-ին, առանձին բրոշյուր, Հայպետհրատ։*

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների

Միության Կոնստիտուցիա (Հիմնական Օրենք), գլուխ 11, էջ 27—28, Հայպետհրատ, 1947 թ.։

Գ. ՄԱԼԵՆԿՈՎ— Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին, Հայպետհրատ, 1952 թ., էջ 81—83, 91—97։

Ամենադեմոկրատական ընտրական սիստեմը աշխարհում, «Ս. Հ.», 26 հունվարի, 1954 թ.։

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ԲԱՆԱԿԻ ԵՎ ՌԱԶՄԱ-ԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ ՕՐԸ

*1. Սովետական Բանակը և Ռազմա-Ծովային նավատորմը ՍՍՌՄ և բոլոր ազատասեր ժողովուրդների խաղաղության և անվտանգության պաշտպանն է։*

*2. Մեր մեծ երկրի բոլոր ժողովուրդները անձնվեր և ստեղծագործ աշխատանքով ամրապնդում են Սովետական Միության ռազմական և տնտեսական հզորությունը։*

*3. ՍՍՌՄ Ռազմական Ուժերի համաշխարհային պատմական հաղթանակը Հայրենական Մեծ պատերազմում։*

*4. Սովետական Բանակի հերոսական պայքարը օտարերկրյա զավթիչների դեմ, քաղաքացիական կռիվների տարիներին։*

*5. Կոմունիստական պարտիան Սովետական Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի ստեղծողն ու ղեկավարն է։*



## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ճառ արտասանած «Կարմիր սպայի տանը» 1918 թ. նոյեմբերի 24-ին, Երկեր, հատոր 28, 4-րդ հրատարակություն, էջ 238—239։

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Դիմում Կարմիր Բանակին, Երկեր, հատոր 29, 4-րդ հրատարակություն էջ 290—291։

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ճառ Կոլչակի դեմ մղվող պայքարի մասին Մոսկվայի ֆաբրիկա-գործարանային կոմիտեների և պրոֆեսիոնալ միությունների կոնֆերենցիայում, 17 ապրիլի 1919 թ., Երկեր, հատոր 29, 4-րդ հրատարակություն, էջ 388—393։

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Կարմիր Բանակի երեք առանձնահատկությունների մասին, առանձին բրոշյուր, Հայպետհրատ, 1946 թ.։

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ —Ճառ Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում, 1946 թ. փետրվարի 9-ին, առանձին բրոշյուր, Հայպետհրատ, 1946 թ.։

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմի մասին, առանձին գիրք, Հայպետհրատ, 1946 թ.։

Գ. ՄԱԼԵՆԿՈՎ— Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին, Հայպետհրատ, 1952 թ.

# ԲԱՆՋԱՐԵՂԵՆԻ ՍԵՐՄԵՐԻ ՑԱՆՔԸ ՏՈՐՖԱ-ՀՈՒՄՈՒՍԱՅԻՆ ԹԱՂԱՐՆԵՐՈՒՄ

*Բանջարեղենի սածիլներ աճեցնելիս սովորաբար սերմերը ցանում են ջերմատների գրունտում և ապա տեղափոխում տորֆահումուսային թաղարները: Այս եղանակը շատ թերություններ ունի: Սածիլի վերատնկումը (պիկիրովկա) որքան հնարավոր է պետք է արագ կատարել, որպեսզի նա չըգերաճի, դրա համար էլ մեծ քանակությամբ բանվորական ուժ է պահանջվում: Վերատնկումը կասեցնում է բույսի աճն ու զարգացումը, քանի որ սածիլման ժամանակ հաճախ վնասվում են նուրբ արմատաճյուղերը, թաղարներ տեղափոխված սածիլները արմատակալում են ոչ շուտ, քան 10—12 օր հետո: Նոգինսկի շրջանի Ստալինի անվան կոլտնտեսությունում կաղամբի սերմերը ցանում են ուղղակի հալվող թաղարների մեջ, որոնք հետո սառեցնում են: Թաղարները ջերմատներում տեղավորվելուց 5—6 օր*



*հետո դրանք հալվում են և սկսում են երևան գալ համատարած ծիլեր: Սածիլների աճեցման այս եղանակի դեպքում կրճատվում է վերատնկման համար ծախսվող բանվորական ուժի քանակը, բույսերը չեն հիվանդանում, քանի որ դրանք բաց գրունտ են տեղափոխվում թաղարների հետ միասին և այն էլ մեկ անգամ: Բրոնիցկու շրջանի «Բորեց» կոլտնտեսության բանջարաբույծները նույնպես կաղամբի սերմերը ցանում են հալվող թաղարների մեջ և լավ արդյունքներ ստանում:*

*Պրոֆ. Վ. Ի. Էդելշտեյնը ծանոթանալով այս փորձին, բարձր գնահատեց այն և խորհուրդ տվեց թաղարներ պատրաստելիս ավելի շատ տորֆ ավելացնել: Լավ խառնուրդ կարելի է ստանալ վեց բաժին տորֆից, երկու բաժին թեփից (որպեսզի զանգվածը ավելի փուխր լինի), երկու բաժին հումուսից, մեկ բաժին գոմաղբից հանքային պարարտանյութերի խառնուրդով: Պոմիդորի սածիլների համար սուպերֆոսֆատի քանակը կարելի է հասցնել մեկ կիլոգրամ զանգվածին մինչև 24 գրամի, իսկ ազոտի քանակը կաղամբի և պոմիդորի սածիլների համար չպետք է անցնի երեք գրամից: Նախքան թաղարների պատրաս-*

տումը պետք է ստուգել տորֆի թթվությունը։ Տորֆի բարձր թթվածությունը չեզոքացնում են զանգվածին թարմ կիր խառնելով։

Սերմերը ավելի լավ է խորանարդիկների և թաղարների մեջ ցանել՝ դրանց պատրաստումից անմիջապես հետո։ Կաղամբը կարելի է ցանել նաև նախքան թաղարների սառեցումը— զերոյից ցածր ջերմության դեպքում սերմերը չեն յարովիզացվի։

Սառեցված խորանարդիկների դարսակները պետք է ծածկել մեկ մետր հաստություն ունեցող ձյան շերտով, բայց ոչ հալվող ձյան, իսկ վերևից՝ թեփով կամ գոմաղբով, ծղոտով։ Այդպիսի դարսակներում խորանարդիկները լավ են պահպանվում մինչև գարուն։

Եթե ցանքը կատարվում է գարնանը, ինչպես հաճախ պատահում է, ապա ավելի լավ է ցանել թրջած կամ կեղևը պատռած՝ ծլած սերմեր։ Դա կարագացնի, որ պոմիդորը ծլի 3—5, իսկ կաղամբը՝ 2—3 օրում։

---

## ՊԵՏԱԿԱՆ ՓՈԽԱՌՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՇԱՀՈՒՄՆԵՐԻ ԵՎ ՄԱՐՄԱՆ ԽԱՂԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՆՑԿԱՑՄԱՆ 1954 ԹՎԱԿԱՆԻ ՊԼԱՆԸ

Հունվարի 24-ին— *ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման Պետական երրորդ փոխառության շահումների 11-րդ խաղարկություն, Ակմոլինսկ քաղաքում։*

Հունվարի 30-ին— *Պետական երեք տոկոսանոց շահող ներքին փոխառության շահումների 37-րդ խաղարկություն, Մոսկվա քաղաքում։*

Փետրվարի 28-ին— *ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման Պետական երկրորդ փոխառության շահումների 13-րդ խաղարկություն, Վորոշիլովգրադ քաղաքում։*

Մարտի 7-ին— *ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման Պետական հինգերորդ փոխառության շահումների 7-րդ խաղարկություն, Մոսկվա քաղաքում։*

Մարտի 14-ին— *ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման Պետական չորրորդ փոխառության շահումների 9-րդ խաղարկություն, Տոմսկ քաղաքում։*

Մարտի 30-ին— *Պետական երեք տոկոսանոց շահող ներքին փոխառության շահումների 38-րդ խաղարկություն, Բաքու քաղաքում։*

Ապրիլի 25-ին— ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման Պետական փոխառության (1951 թվականի թողարկում) շահումների 5-րդ խաղարկություն, Վիլնյուս քաղաքում։

Մայիսի 9-ին— 1948 թվականի Պետական երկու տոկոսանոց փոխառության շահումների 13-րդ խաղարկություն, Պենզա քաղաքում։

Մայիսի 23-ին— ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման Պետական փոխառության (1952 թվականի թողարկում) շահումների 3-րդ խաղարկություն, Մոսկվա քաղաքում։

Մայիսի 30-ին— Պետական երեք տոկոսանոց շահող ներքին փոխառության շահումների 39-րդ խաղարկություն, Լենինգրադ քաղաքում։

Հունիսի 20-ին— ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման Պետական երրորդ փոխառության շահումների 12-րդ խաղարկություն, Չերոկսարի քաղաքում։

Հուլիսի 25-ին— ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման Պետական փոխառության (1953 թվականի թողարկում) շահումների 1-ին խաղարկություն, Իժևսկ քաղաքում։

Հուլիսի 30-ին— Պետական երեք տոկոսանոց շահող ներքին փոխառության շահումների 40-րդ խաղարկություն, Կիև քաղաքում։

Օգոստոսի 22-ին— ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման Պետական երկ-



րորդ փոխառության շահումների 14-րդ խաղարկություն, Լենինաքադ քաղաքում։

Սեպտեմբերի 19-ին և 20-ին— ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման Պետական չորրորդ փոխառության շահումների 10-րդ խաղարկություն և մարման առաջին խաղարկություն, Աստրախան քաղաքում։

Սեպտեմբերի 30-ին— Պետական երեք տոկոսանոց շահող ներքին փոխառության շահումների 41-րդ հիմնական և 7-րդ լրացուցիչ խաղարկություն, Մոսկվա քաղաքում։

Հոկտեմբերի 24-ին— ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման Պետական հինգերորդ փոխառության շահումների 8-րդ խաղարկություն, Զապորոժյե քաղաքում։

Հոկտեմբերի 31-ին— ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման Պետական երկրորդ փոխառության մարման 3-րդ խաղարկություն, Մոսկվա քաղաքում։

Նոյեմբերի 14-ին— ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման Պետական փոխառության (1951 թվականի թողարկում) շահումների 6-րդ խաղարկություն, Պսկով քաղաքում։

Նոյեմբերի 21-ին— ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման Պետական երրորդ փոխառության մարման 2-րդ խաղարկություն, Մոսկվա քաղաքում։

Նոյեմբերի 30-ին— Պետական երեք տոկոսանոց

շահող ներքին փոխառության շահումների 42-րդ խաղարկություն, Մոսկվա քաղաքում։

Դեկտեմբերի 12-ին — *ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման Պետական փոխառության (1953 թվականի թողարկում) շահումների 2-րդ խաղարկություն, Օրյոլ քաղաքում։*

Դեկտեմբերի 19-ին և 20—21-ին — *1948 թվականի Պետական երկու տոկոսանոց փոխառության շահումների 14-րդ խաղարկություն և մարման 3-րդ խաղարկություն, Սերպուխով քաղաքում։*

Դեկտեմբերի 26-ին — *ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման Պետական փոխառության (1952 թվականի թողարկում) շահումների 4-րդ խաղարկություն, Նովգորոդ քաղաքում։*

---


Պտ. խմբագրի՝ Վ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

Отдел Пропаганды и агитации ЦК КП Армении

№ 3 1954 г.

БЛОКНОТ АГИТАТОРА

*ՎՖ 08728* *Պատվեր 126* *Տիրաժ 8230*

*Հայպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան Կոմունյանցի № 8, 1954 թ., գինը 50 կոպ.։*